O'rbelyan ishxanneri Burt'elyan gertastane" ev Syunyats' episkopos paronter Step'anose" [The Burt'elyan Line of Orbelyan Princes and Siwnik's Bishop Lord Step'annos], by Levon Khachikyan, from *Patma-banasirakan handes [Historico-Philological Journal]* (Erevan, Armenia), 1 (1991), pp. 85-92, in 8 pdf pages.

# ՕՐԲԵԼՅԱՆ ԻՇԽԱՆՆԵՐԻ ԲՈՒՐԹԵԼՅԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ ԵՎ ՍՅՈՒՆՅԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԱՐՈՆՏԵՐ ՍՏԵՓԱՆՈՍԸ

ՀԳԱ ակադեմիկոս Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ

*Հանգուցյալ ակադեմիկոս Լ. Խաչիկյանի սույն հոդվածը գրված է եղել իբրև նրա «Օրբելյան իշխանների Բուրթելյան գերդաստանը և Սյունյաց եպիսկոպոս պարոնտեր Ստեփանոսը» հետազոտության մաս, ըստ որում այդ հետազոտության սկիզբը՝ «Սյունյաց Օրբելյանների Բուրթելյան ճյուղը» վերնագրով տպագրվել է «Բանբեր Մատենադարանի» № 9-ում (1963, էջ 173—199), իսկ շարունակությունը անտիպ է, որը և խմբագրությանն է ներկայացրել գիտնականի դուստրը՝ Շուշանիկ Խաչիկյանը։*

«Պատմա-բանասիրական հանդեսի» 1965 թ. 2-րդ համարում բանասեր Պ. Խաչատրյանը հրատարակեց մի հաղորդում «Տաղ Ստեփանոսին Սիւնեաց եպիսկոպոսին» նուշոր միջնադարյան ողբ-պոեմի մասին[1]։ Այդ գեղեցիկ ստեղծագործության բնագիրը խիստ թերի վիճակում է հասել մեզ, ուստի պատմվող ողբերգական անցուդարձերի բովանդակության, ժամանակի, սոցիալական միջավայրի հետ առնչվող մի շարք էական հարցեր մթության քողով են պատված։ Ողբ-պոեմի կենտրոնական հերոսը՝ Ստեփանոս անունով մի եպիսկոպոս, մեղսակից է դառնում իր խորթ մոր՝ Էլ-Խութուկ սպանությանը. Նրա շարժումները լույս են տարածում, որ նա մտադրություն ունի սպանելու «Մեծ Դիւանի» կոչվող իր հորը, ու պահանջում հոր համաձայնությունը՝ «զի սպանցուք այսօր քո զուգին»։ Հայրը տվայտանքի մեջ է, տատանվում է մահվան վճիռ արձակել, սակայն ի վերջո, երբ հայտարարում են, որ «եթէ ոչ տայցես մեզ հրաման՝ մեռցիս ընդ նմին», նրանք կորզում են հոր համաձայնությունը և սպանում տեր Ստեփանոսին։

Նահատակված տեր Ստեփանոսի որդեկորույս մոր կսկիծն ու վիշտը պատկերված է գեղարվեստական կատարելությամբ։ Հեղինակը, անտարակույս, օգտագործելով միջնադարյան լալկան կանանց ողբասացությունների հնարանքները, իր հերոսի եղեռնական մահվան ախուր պատմությունը ազդեցիկ ու աղեկտուր է դարձնում։ Ուշագրավ են նաև ողբի այն տողերը, որով բացահայտվում են նահատակվածի արտաքին ու ներքին բարեմասնությունները և այլն։

Ձեռքի տակ չունենալով հավաստի տվյալներ որոշելու, թե երբ և ինչ հանգամանքներում են կատարվել պոեմի հիմքում ընկած պատմական դեպքերը, Պ. Խաչատրյանը մանրակրկիտ վերլուծության է ենթարկում խնդրո առարկա ստեղծագործության պահպանված հատվածները, և առկա ակնարկների խոր ուսումնասիրությամբ փորձում է լուսաբանել մթագնված այդ եղելության դրվագները։ Նա հանգում է այն եզրակացության, որ ողբ-պոեմի մեջ արտացոլված միջավայրը «Արևելյան Հայաստանն է. ավելի կոնկրետ՝ Պարսկաստանին սահմանակից Սյունյաց նահանգի Վայոց ձոր գավառը, Եղեգնաձորը, և մասամբ Ատրպատականի Թավրիզ քաղաքը՝ ավելի վաղ անցյալի համար»[2]։ Տեր Ստեփանոսը հավանաբար Օրբելյան իշխանական տան պայազատներից է։ «Ողբի նյութը վերցված է ավատական ընտանիքի ոլորտից», սակայն «ընտանեկան ու նեղ թվացող դրաման իր մեջ բևեռել է միջնադարի պատմության բնորոշ մի էջ»։ Հաճախ է պատահել, որ

---

1 Պ. Մ. Խաչատրյան. Միջնադարյան մի անտիպ ողբ («Տաղ Ստեփանոսին»).— «Պատմա-բանասիրական հանդես», 1965, № 2, էջ 197—204։

2 Նույն տեղում, էջ 202։

օտար տիրապետողների պահանջով կամ այլ դրդապատճառներով հայ (և ոչ միայն հայ) իշխանական տների որոշ ներկայացուցիչներ, դիրքի ու պաշտոնի մղումով կամ մահվան սարսափից, դիմել են ուրացության՝ հաշվի չառնելով անգամ արենակցական կապերը»[3]։

Տեր Ստեփանոսի և նրա հոր շուրջը համախմբված անձնավորությունների միջև ստեղծված թշնամությունը, խորթ մոր սպանությունն ու Ստեփանոսի եղերական վախճանը Պ. Խաչատրյանը բացատրում է «հարազատ մոր կենդանությամբ այլազգի խորթ մայր ունենալու՝ քրիստոնյային անպատվաբեր ու հակաբարոյական» վիճակով։ Ողբի մեջ, նրա կարծիքով, «դեմ հանդիման կանգնել են հայրը՝ անձնական բարօրության ու դիրքը «խոհեմ» ընթացքով, և որդին՝ քրիստոնյա մարդու և հարազատ մոր պատվի շահախնդրությամբ»[4]։ Ողբում նկարագրված դեպքերը տեղի են ունեցել «XIV դարում, ոչ-ուշ քան մինչև XV դարի սկզբները»[5], իսկ ողբի հեղինակը, հավանաբար, եղել է Սյունյաց եպիսկոպոս ու անվանի բանաստեղծ Առաքել Սյունեցին։

Սրանք են, ահա, Պ. Խաչատրյանի ուսումնասիրության հիմնական հետևությունները։

Միջնադարյան հայ գրականության մեջ գեղարվեստական իր հատկանիշներով ու բովանդակությամբ պատվավոր տեղ գրավող այս ստեղծագործությանը Մատենադարանի «Բանբերի» ութերորդ գրքում անդրադարձել է տնվանի բանասեր Աս. Մնացականյանը, որը, տարիներ առաջ, օգտագործելով առկա ձեռագրերը, կազմել էր ողբի համեմատական բնագրերը[6]։ Հրատարակելով ողբ-պոեմի 3 տարբերակներ՝ ձեռագրական տարընթերցվածքներով, Աս. Մնացականյանը ընդարձակ իր ներածականում կանգ է առնում այդ ստեղծագործության հորինման ժամանակի, նրա հիմքում ընկած անցուդարձերի բովանդակության հետ առնչվող հարցերի վրա և հանգում այն եզրակացության, որ Պ. Խաչատրյանի կողմից «անտեսված է պոեմի քաղաքական, հայրենասիրական ոգին, ճիշտ չեն բացատրված նրա ստեղծման ժամանակը, հեղինակը, տաղաչափությունը» և այլն[7]։

Եվ ահա, մերժելով այն ամենը, ինչ ասված է տեր Ստեփանոսի նահատակության հանգամանքների մասին Պ. Խաչատրյանի կողմից, քննարկվող բնագրի մեջ պահպանված մութ անմարկներին տալով յուրովի մեկնաբանություն, Աս. Մնացականյանը փորձում է վերստեղծել ողբ-պոեմի հիմքում ընկած պատմական եղելությունները՝ այսպես.

Տեր Ստեփանոսի հայրը պոեմում կոչված է «Մեծ Դիւանի», որ նշանակում է ոչ այլ ինչ, քան «Սահիպ Դիւանի» (այդպես էին կոչվում մոնղոլական իշխանության հարկային ու ֆինանսական գործերի կենտրոնական ատյանի բարձրագույն պաշտոնյաները)։ «Այդ պաշտոնին հասած հայ գործիչ մեզ ծանոթ չէ և հավանաբար ոչ միայն չի եղել, այլև չէր կարող լինել»[8]։ «Քանի որ Սահիպ Դիվանիները և մոնղոլական մյուս իշխողները նստում էին Թավրիզում, ուստի այնտեղ պիտի ապրելիս լիներ նաև մեր պոեմի «Մեծ Դիւանին» իր կանանց և զավակների հետ»[9]։ Այդ «Սահիպ Դիվանիի» կանանցից մեկը (Ստեփանոսի մայրը) եղել է քրիստոնյա, իսկ մեկ ուրիշը (պոեմի մեջ հիշատակված Էլ-Խութլուն)՝ մահմեդական։ Այս վերջինը՝ «ինչպես կարելի է ենթադրել, հանդիսացել է մոնղոլ տիրողների ականավոր տոհմերից

3 Նույն տեղում, էջ 197։

4 Նույն տեղում, էջ 198։

5 Նույն տեղում, էջ 202։

6 Ասատուր Մնացականյան. Միջնադարյան հայրենասիրական մի նորահայտ պոեմ («Տաղ Տեր Ստեփանոսին՝ Սիւնեաց եպիսկոպոսին»).—«Բանբեր Մատենադարանի», № 8, 1967, էջ 291—317։

7 Նույն տեղում, էջ 292։

8 Նույն տեղում, էջ 298։

9 Նույն տեղում, էջ 299։

մեկի դուստրը, և, հավանաբար, հարազատների և այլ բռնակալների դրդումով, մեծ եռանդով խառնվել՝ պետական գործերին։ Նրա այդ գործունեությունը շատ ծանր է նստել «ժողովրդի» վրա, որն էլ խնդրել ու համոզել է Ստեփանոսին՝ սպանել նրան՝ որպես բոլոր տեսակ չարիքների մոր»[10]։ Եվ ահա, տեր Ստեփանոսը, հաշվի առնելով Էլ-Խութլուի «հասարակական վնասակարությունը», ի կատար է ածել «ժողովրդի ցանկությունը»։ Ըստ այդմ էլ այդ սպանությունը, ինչպես և պոեմում նկարագրված հետագա դեպքերը, կրել են «ոչ թե ընտանեկան բնույթ, այլ հասարակական, քաղաքական», «այդ ամենի հիմքում ընկած են եղել բռնատիրական ծայրահեղ չարաշահումներ՝ ուղղված նվաճված ժողովրդի դեմ»[11] և այլն։

Ողբ-պոեմի առանցքը կազմող դեպքերը, ըստ Աս. Մնացականյանի, տեղի են ունեցել XIII դարի երկրորդ կեսին, կամ ամենաուշը՝ XIV դարի սկզբներին, Թավրիզ քաղաքում՝ «Մեծ Դիւանիի» նստավայրում։ Առաքել Սյունեցին, հարգելի բանասերի կարծիքով, չի կարող համարվել հեղինակը խնդրո առարկա ստեղծագործության, որովհետև 1387 թ. «տասնամյակներ առաջ» այն գոյություն ուներ։ Այդ թվականին, հարմարեցվելով Սեբաստիայի Ստեփանոս եպիսկոպոսի նահատակությանը, ստեղծվել է պոեմի մի փոփոխակը, այն էլ արդեն «աղճատված, ժողովրդականացման ուղին բռնած» մի տարբերակի հիման վրա[12]։

Այսպիսով, միևնույն գրական ստեղծագործության պատմական բովանդակության, հորինման ժամանակի և հարակից հարցերի մասին երկու տարբեր բանասերներ հայտնել են իրարամերժ տեսակետներ, յուրովի մեկնաբանելով պոեմի մեջ առկա անորոշ ու մութ տվյալները։

Ողբ-պոեմի մեկնաբանները տարակարծիք չեն միայն մի հարցում՝ թե Հայաստանի որ նահանգում է ապրել և եպիսկոպոսական պաշտոն վարել նահատակված հերոսը՝ տեր Ստեփանոսը։ Պոեմի ընդօրինակություններից մեկի խորագրում, ինչպես նաև բնագրի մեջ որոշակի ասվում է, որ Ստեփանոսը Սյունյաց եպիսկոպոս և Սյունյաց իշխան է եղել. հիշատակություն կա նաև Եղեգնաձորի մասին։ Ըստ այդմ էլ ուշագրավ այս ստեղծագործությունը ճիշտ վերլուծելու և հասկանալու համար անհրաժեշտ է, նախ և առաջ, մանրախույզ քննությամբ ուսումնասիրել Սյունյաց նահանգի աշխարհիկ ու հոգևոր տերերի մասին պահպանված տպագիր ու անտիպ գրավոր հիշատակությունները, հույս ունենալով գտնել հավաստի պատմական վկայություններ տեր Ստեփանոսի և պոեմի մյուս գործող անձանց մասին*։

* * *

Այժմ անդրադառնանք «Տաղ Ստեփանոսին՝ Սիւնեաց եպիսկոպոսին» ողբ-պոեմին։

Իվանե Բուրթելյանի Սուլթանշահ-Ստեփանոս որդու մասին մեր ունեցած վկայությունները, նույնիսկ առանց լրացուցիչ փաստերի, միանգամայն բավարար են համոզվելու, որ խնդրո առարկա ստեղծագործության հերոսը նույն այդ Սուլթանշահ-Ստեփանոսն է եղել։ Այդ մասին, սակայն, հենց պոեմի մեջ հանդիպում ենք շատ որոշակի ասված մի վկայության, որ վրիպել է և՛ Պ. Խաչատրյանի, և՛ Աս. Մնացականյանի ուշադրությունից։

Պոեմի մեջ ուշագրավ են որդեկորույս մոր դառը վիշտը պատկերող տողերը.

Լաց ասէր գերին,
Գրգռւէր զիւր որդին,

---

10 Նույն տեղում, էջ 301։

11 Նույն տեղում, էջ 301, 303 և հտ.։

12 Նույն տեղում, էջ 292—293։

* Այդպիսի ուսումնասիրություն կատարել է այս հոդվածի հեղինակը. տե՛ս նրա Սյունյաց Օրբելյանների Բուրթելյան ճյուղը.—«Բանբեր Մատենադարանի», № 9, էջ 173—199։

«Որդեակ իմ, որդեակ, սուլթան շայ,
Մարս մասն և բաժին»[13]։

Ընդմիջված «Սուլթան շայ»-ը, անտարակույս, պետք է միացնել ու կարդալ Սուլթանշահ, որ, ինչպես գիտենք, Ստեփանոսի աշխարհական անունն է եղել ու չի մոռացվել նրա կողմից նույնիսկ եպիսկոպոս դառնալուց հետո (հիշենք, որ նա ինքնագիր իր հիշատակարանում ևս իրեն ներկայացրել է որպես «Տէր Ստեփաննոս-Սուլթանշայ»)։ Աս. Մնացականյանը այն ընկալել է սոսկ որպես վշտահար մոր կողմից իր սիրասուն զավակի հասցեին շռայլված դրվեստի խոսքեր՝ «սուլթան» և «շահ»։

Ոտք-պոեմի մեջ, աննշան աղավաղումով. պահվել է նաև Ստեփանոս-Սուլթանշահի հոր՝ Իվանե Բուրթելյանի անունը։

Ստեփանոսին սպանել ցանկացող անձինք ներսայանում են նրա հորը և շարախոսում, ասելով, որ նա, իր խորթ մորը՝ Էլ-Խութլուին սպանելուց հետո, մտադրվել է սպանել նաև քեզ։

Պոեմի մեջ հասած պատումներից (ճիշտ կլիներ ասել՝ ընդօրինակություններից) առաջինում է միայն պահպանվել այդ հատվածը, այն էլ աղավաղված ձևով.

«Դումարեալ եկին
Առ Մեծ Դիւանին,
Ձի «դայ՝ սպանանէ զքեզ, Հայսար
Ահա քո որդին»[14]։

Գիտենք արդեն, որ «Մեծ Դիւանի» կոչված անձնավորությունը, ըստ Աս. Մնացականյանի, Ստեփանոսի հոր «պաշտոնի անունն է, անձնանունը չի պահպանված»։ Այդպես մտածելով հարդելի բանասերը «Մեծ Դիւանիին» նարձնում է մոնղոլական իշխանության բարձրաստիճան պաշտոնյա՝ Սահիպ-Դիվան, հայտարարում, որ այդ պաշտոնին հասած հայ գործիչ «չի եղել և չէր կարող լինել», և հասարակական, սոցիալական ու քաղաքական հիմքեր է նշմարում տեր Ստեփանոսի սպանության դրդապատճառների մեջ, նրան համարելով աշխատավոր ու բռնադատված հայ ժողովրդի շահերը պաշտպանելու համար պայքարի ելած մի հերոս, կշտամբելով Պ. Խաչատրյանին՝ պոեմի «քաղաքական, հայրենասիրական ոգին» անտեսելու մեջ։

«Մեծ Դիւանիի» խճճված խնդիրը, սակայն, լուծվում է զարմանալի դյուրությամբ։

Ճիշտ այնպես, ինչպես ձեռագրերում պահպանված «սաւլթան շայ»-ը սրբագրվեց «Սուլթանշահ» ձևով, «դումարեալ եկին առ Մեծ Դիւանին» նախադասությունն էլ պետք է սրբագրել (ընդամենը մի «դ» դուրս նետելով)՝ «գումարեալ եկին առ մեծ Իւանին» ձևով։

Անիմաստ կլիներ կրկին անդրադառնալ այն հարցին, թե ով էր Բուրթելի որդի, Բեշքենի եղբայր, Սուլթանշահ-Ստեփանոսի հայր, Որոտանի տեր Իվանե իշխանը (հիշենք, որ նրա անունը տառադարձված է սկզբնաղբյուրներում տարբեր ձևերով՝ Իւանէ, Իվանիկ, Իւան, Ինանիկ, Նանիկ)։

«Տաղ Ստեփանոսին» ողբ-պոեմը տվյալ է պահպանել Իվանեի երկու կանանց՝ Էլ-Խութլուի և Սուլթանշահ-Ստեփանոսի անանուն մոր մասին։

Աս. Մնացականյանի կարծիքով «Էլ-Խութլուն... հանդիսացել է մոնղոլ տիրողների ականավոր տոհմերից մեկի դուստրը»։ Հարկ է նշել, սակայն, որ Էլ-Խութլու, Խութլու, Էլ-Խաթուն թուրք-թաթարական ծագում ունեցող տասնյակ ու հարյուրավոր նման անձնանուններ լայնորեն տարածված էին Հայաստանում XIV—XV և հետագա դարերում[15]։ Ուստի, անունից դատե-

13 «Բանբեր Մատենադարանի», № 8, էջ 310։

14 Նույն տեղում, էջ 308։

15 Էլ-Խութլու անունն էր կրում, օրինակ, Ամիր-Ասադ Պռոշյան իշխանի կինը, Գրիգոր Տաթևացու «Ոսկեփորիկ» աշխատության պատվիրատու խոջա Մասուտ-շահի մայրը և ուրիշներ։

լով, հնարավոր չէ որոշել որևէ անձնավորության, իսկ տվյալ դեպքում՝ Իվանե Բուրթելյանի կնոջ, ազգային պատկանելությունն ու սոցիալական դիրքը։

Իվանե—էլ-Խութլու զույգի զավակներին հնարավոր է զատել մյուս կնոջից ծնված զավակներից։

Սուլթանշահ-Ստեփանոսի մոր անունը, ասացինք, չի պահպանվել. այս կնոջից Իվանեն ունեցել է միայն մի որդի՝ Սուլթանշահին։ Մոր բերանով պոեմի հեղինակը որոշակի հայտնում է. «Աստուած, դու գիտես, որ էս մէկս, էլ որդի չունիմ»[16]։ Տարաբախտ այս կնոջը «գերի» է կոչում հեղինակը («լաց սաէր գերին, դրդուէր գէար որդին»)։ «Նոր բառգիրք հայկազեան լեզուի» նշանավոր բառարանը այդ բառին տալիս է «կալանաւոր, վտարանդեալ յօտարութիւն, կամ յափշտակեալ ի ստրկութիւն...» իմաստները։ Կարելի է, ուրեմն, հետևցնել, որ Սուլթանշահի մայրը Իվանե Բուրթելյանի օրինավոր կինը չի եղել, այլ սոսկ «գերին»՝ հարճը։

Ըստ այդմ Իվանեի էլ-Խութլու կնոջից ծնված զավակներն են Գորգուն, Սմբատ և Բուրթել եղբայրները։ Էլ-Խութլուն և անանուն հարճը, անտարակույս, ապրել են միաժամանակ։ Եվ այս հանգամանքը զարմանալի չպետք է թվա քրիստոնյա հայ մի ֆեոդալի համար։ Հիշենք, որ Իվանեի մեծ պապ Տարսայիճ Օրբելյանը կնության առավ Խաչենի իշխան Ջալալի դուստր Մինախաթունին «առ կենօք առաջի ամուսնոյն»[17]։

Սուլթանշահ-Ստեփանոսը երիտասարդ հասակում որոշ տարիներ անց է կացրել Թավրիզ քաղաքում. այդ մասին շատ պարզ ցուցում կա պոեմի մեջ.

Թարվէզ քաղաքին
Ի մեծ մէդանին
Մէկ մանուկ չըկայ, որ քաշէր
Ձաղեղ պարոնին։

Թարվէզ քաղաքին,
Մէջ շատ հեծելին
Չհուքմ ու զուրաւի չու առնէր
Հաւետարանին[18]։

Այս տողերը կասկած չեն թողնում, որ պատանի Սուլթանշահը դաստիարակվել է որպես զինվորական ու փայլել Թավրիզում իր տարեկիցների մեջ՝ դիպուկ աղեղնաձիգի, հզոր բազկի տեր ու խոստումնալից ռազմիկի համբավ ձեռք բերելով։

Սուլթանշահի հորեղբայր Բեշքեն իշխանի կյանքի սարեգրությունը շարադրելիս նկատել ենք, որ նա 1337 թ., հավանաբար որպես Սյունյաց զորախմբի հրամանատար, գտնվում էր իլղանության հին ու նոր մայրաքաղաքներում՝ Թավրիզում և Սուլթանիայում[19]։ Պետք չէ կասկածել, որ նրա հետ եղել են նաև Բուրթելյան այլ պայազատներ, որոնցից էր նաև մեր Սուլթանշահը։ Այս ենթադրությունը ավելի հավանական է դառնում, երբ ուշադրություն ենք դարձնում Սուլթանշահի ինքնագիր հիշատակագրության մի ուշագրավ առանձնահատկության վրա։ Ընդամենը մի քանի տող գրավող այդ գրության մեջ նա, անհարկի, հիշատակում է ոչ միայն իր հոր ու պապի (Իվանեի ու Բուրթելի) անունները, որ լիովին բավարար էին նրա ով լինելը մատնանշելու համար, այլև անհրաժեշտ է համարում ավելի շեշտել արդեն վախճանված իր հորեղբոր՝ Բեշքենի անունը[20]։ Ցույց անգիտակցաբար նա

16 «Բանբեր Մատենադարանի», № 8, էջ 310։

17 Ստեփանոս Օրբելեան. Պատմութիւն տանն Սիսական. Թիֆլիս. 1910, էջ 424։

18 «Բանբեր Մատենադարանի», № 8, էջ 316։

19 «Բանբեր Մատենադարանի», № 9, էջ 177։

20 Տե՛ս նույն տեղում, էջ 179։

իր հոգեհարազատությունն է ցույց տվել հորեղբոր նկատմամբ, որի ձեռքի տակ Թավրիզ քաղաքում դաստիարակվել է որպես զինվորական։

Բեշքեն իշխանին իր հայրենական կալվածքներից բաժին էր ընկել Եղեգնաձորը. նա ուներ մեկ որդի՝ Էլիկում-Կուկան, որ 1349-ից մի քանի տարի առաջ, ամուսնանալով Ամատա Շահուռեցի իշխանի Նաթիլ դստեր հետ, ժառանգել էր Շահուռեցիների կալվածքները։ Կարելի է, ուստի, կռահել, որ Բեշքենը իր Սուլթանշահ եղբորորդուն դուրգուրում էր նաև որպես իր կալվածքների ապագա ժառանգորդ (չմոռանանք, որ պոեմի մեջ տեր Ստեփանոսը մեծարված է որպես «իշխան Սիւնեաց»)։

Սուլթանշահի ճակատագիրը, սակայն, այլ կերպ էր գծված։

Իվանե Բուրթելյանի էլ-Խութլու կնոջ սադրանքով, հավանաբար, հայրենական կալվածքների մասնատման որոշված կարգը փոխվում է հօգուտ էլ-Խութլուի զավակների և ի վնաս Սուլթանշահի, որին պարտադրում են եկեղեցականի սքեմ հագնել ու քավարարվել Սյունյաց եպիսկոպոսի հոգևոր պաշտոնով։ Եղեգնաձորը բաժին է տրվում Իվանեի և էլ-Խութլուի Գորգուն որդուն։

Կարծում ենք, որ մի կողմից՝ Սուլթանշահ-Ստեփանոսի ու մյուս կողմից՝ էլ-Խութլու իշխանուհու և նրա որդիների թշնամության գրդապատճառը պետք է որոնել հենց հայրենական կալվածքների տիրակալման համար ծավալված վեճերի մեջ։ Տեղին է հիշել Մատթեոս Ջուղայեցու սրամիտ մի դիտողությունը այս ժամանակաշրջանի հայ իշխանների մասին. «Այժմ մնացեալ սուտ իշխանքն Հայոց,—գրել է նա,—զմիմեանց չիլս հատանեն և զարմանալի ես չ, զի բոլոր երկիրս աւեր՝ և վասն աւերածիս կռուին»[21]։

Այս դեպքում, սակայն, խնդիրը չի փակվում կռվով ու թշնամությամբ. Սուլթանշահը, իր համակիրների խորհրդով, սպանել է տալիս էլ-Խութլուին։ Խորթ մոր նկատմամբ թշնամությունը վերաճել կարող էր ատելության՝ հարազատ մոր նվաստ ու ստորագաս վիճակի գիտակցությամբ ու թելադրանքով, ինչպես իրավացիորեն ակնարկել է Պ. Խաչատրյանը[22]։

Երբ Սուլթանշահ-Ստեփանոսի արյունաշաղախ գլուխը նետում են մոր գիրկը, նա աղերսում է աստծուն պատուհասել որդուն սպանողին.

Զգոգն արեամբ լցեալ և խնդրէր.
Վրէժ սպանողին։

Աստծո արդար դատաստանը չի ուշանում.

Հուր բորբոքեցաւ
Ցեղեգեց ձորին.
Հրդեհեալ կիզեաց զամենայն
Բնակիչք երկրին[23]։

Պարզ է, ուրեմն, որ Եղեղեաց ձորում պետք է փնտրել ոճրագործին, իսկ Եղեգնաձորի իշխանը Գորգուն Բուրթելյանն էր։

Եվս մի վկայություն՝ ողբ-պոեմից.

Վայդեցին զարիւնն
Տէր Ստեփանոսին.
Արիւնն գոչէր առ Քրիստոս՝
Որպես զԱբելին[24]։

Շատ որոշակի է ասված. Աբելին սպանեց իր եղբայր Կայենը, ըստ այդմ Ստեփանոսին ևս սպանել է իր եղբայրներից մեկը, որ վերոհիշյալ տվյալ-

21 «Բանբեր Մատենադարանի», № 3, էջ 71։
22 «Պատմա-բանասիրական հանդես», 1965, № 2, էջ 198։
23 «Բանբեր Մատենադարանի», № 8, էջ 310։
24 Նույն տեղում, էջ 308։

ներով եղել է Եղեգնաձորի տեր Գորգուն իշխանը, Ստեփանոսի համահայր եղբայրը։ Ավելացնենք, որ նա միայնակ չի եղել, այլ գործել է «խառնիճաղանջ» և «աստուածուրաց» մարդկանց գործակցությամբ, որոնք մեկ անգամ էլ կոչվում են «դինուորքն չարին»։

Որտե՞ղ է կատարվել Սուլթանշահ-Ստեփանոսի սպանությունը։ Աս. Մնացականյանի կարծիքով՝ Թավրիզում, բայց այս եզրակացությունը սարօրինակ է թվացել նույնիսկ հեղինակին. «Պոեմի պակասավորության պատճառով,—գրել է նա,—լրիվ չի ընկալվում, թե Ստեփանոսը Սյունիքում գտնվելով, ինչպե՞ս եղավ, որ պատժվեց «Մեծ Դիւանիի» նստավայրում՝ Թավրիզում»[25]։

Վերոհիշյալ փաստերի լույսի տակ անիմաստ է դառնում նման հարցադրումը։ Ստեփանոսն սպանվել է Եղեգնաձորում։ Նույնիսկ հայտնի է, թե ուր է թաղված նրա խոշտանգված մարմինը։

Թովմա Սպատկերտցի գրիչը 1423 թ. Հերմոնի վանքում գրինակել է Գրիգոր Տաթևացու «Հարցմանց գիրքը»։ այդ ձեռագրի հիշատակարանում նա հայտնում է, որ աշխատել է «ի յերկիրն Վայոցձոր, ի յանապատն Հերմոնի վանք կոչեցեալ, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի մեր Լուսաւորչին, և սուրբ վարդապետացն, որ անդ հանգուցեալ կան՝ Տէրատուր վարդապետն, Գրիգոր վարդապետն, Բարսեղ վարդապետն, տէր Սուլթանշէն»[26]։

Այսպիսով, պարզվում է, որ նահատակ Սուլթանշահ-Ստեփանոսի աճյունը հանգչում է Եղեգնաձորի Հերմոնի վանքում։

Իսկ ե՞րբ է կատարվել սպանությունը։ Ըստ Աս. Մնացականյանի՝ XIII դարի երկրորդ կեսին կամ «առնվազն» XIV դարի սկզբներին։ Այս եզրակացությունն արդյունք է, հատկապես, պոեմի բովանդակության ու գործող անձանց մասին արտահայտած թյուր տեսակետների։ Ժամանակի հարցը պարզելու նպատակով մեջ է բերված նաև մի «փաստ», որի համաձայն 1387 թ. արդեն գոյություն է ունեցել մեր պոեմի «այլափոխված ու վերամշակված» և Սեբաստիայի Ստեփանոս եպիսկոպոսի նահատակությանը հարմարեցված մի փոփոխակ։ Ցավոք, հիմնավոր չէ Աս. Մնացականյանի նաև այս եզրակացությունը։

Սեբաստիայի եպիսկոպոս Ստեփանոսի նահատակությանը հարմարեցված փոփոխակը հրատարակված է առաջին անգամ Ղ. Ալիշանի կողմից 1848 թ.[27]։ Ալիշանը ոչ մի խոսք չի ասել այդ հրատարակության համար հիմք ծառայած ձեռագրի, ինչպես և այդ քերթվածի հորինման ժամանակի մասին. Նա սոսկ նշել է, որ Սեբաստիայի եպիսկոպոս Ստեփանոսը նահատակվել է 1387 թ.։ Նրա նահատակության պատմությունը հրատարակված է «Հայոց Նոր վկաներ» ժողովածուի մեջ 24 ձեռագիր Հայսմավուրքների բաղդատությամբ[28]։ Եվ ահա, այդ 24 Հայսմավուրքներից և ոչ մեկում, վկայաբանության հետ, չկա մեզ հետաքրքրող պոեմի փոփոխակը։ Պարզ է, ուրեմն, որ 1387 թ. անարդարացի և իզուր է հրապարակ բերված Ստեփանոսի աճրասարտ սպանության ու պոեմի ստեղծման ժամանակը պարզելու ակնկալությամբ։

Սուլթանշահ-Ստեփանոսի ինքնագիր հիշատակարանը շարադրված է, մեծ հավանականությամբ, 1366 թ., Իվանե Բուրթելյանը կենդանի էր դեռևս 1377-ին (դրանից հետո շատ ապրած չպետք է լինի)[29]։ Թվական այս տվյալները բավարար հիմք են հանդիսանում ենթադրելու, որ Սուլթանշահի

25 Նույն տեղում, էջ 303։

26 Երուսաղեմ, ձեռ. № 2181, էջ 681 (հմմտ. ժԵ, I, 301)։ Հիշատակարանում «Սուլթանշէն» անունը գրչի վրիպակով գրված է «Սուլթանէշն» առանց ձեռով։

27 «Բազմավեպ», 1848, էջ 341—343։

28 Հայոց նոր վկաներ, գիտական հրատարակություն, աշխատությամբ Հ. Մանանդյանի և Հ. Աճառյանի. Վաղարշապատ, 1903, էջ 137—150։

29 Տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 9, էջ 177—178։

սպանությունը տեղի է ունեցել XIV դարի 60-ական թթ. վերջերին կամ 70-ական թթ.։

Այժմ անդրադառնանք ողբ-պոեմի հորինման ժամանակի ու հեղինակի հարցին։ Հեղինակի մասին նոր ասելիք չունենք. կարծում ենք, որ չի սխալվում Պ. Խաչատրյանը, երբ ամփոփում է իր հոդվածի այս հարցին նվիրված բաժինը այսպես. «Ողբի տաղաչափական, գեղարվեստական-պատկերավորման և քերականական նշված առանձնահատկությունները, այսպիսով, որոշ հիմք են տալիս ենթադրելու, որ նրա հեղինակը, թերևս, Առաքել Սյունեցին է, որի գրական գործունեության եռուն շրջանը, համաձայն մեզ հասած տվյալների, համընկնում է XV դարի առաջին տասնամյակին»[30]։

Առաքել Սյունեցին իր նշանավոր «Ադամգիրքը» հորինել է 1403 թ.։ Պետք չէ տարակուսել, որ նա ստեղծագործական աշխատանքի բազմամյա փորձ է ունեցել այդ բարդ երկը շարադրելիս։ Եվ կարծես որևէ արգելք չկա «Տաղ Ստեփանոսին» ողբ-պոեմի հորինման ժամանակը նկարագրված ողբերգական դեպքերին մոտեցնելու համար։

Այնուամենայնիվ մենք հակված ենք ավելի տևական անջրպետ տեսնելու պոեմում պատմվող անցուդարձերի և նրա հորինման ժամանակի միջև։

Ոճիրը կատարող կամ ոճրագործին նպաստող անձինք Սյունյաց նշանավոր իշխաններն են եղել։ Ժամանակի գրչի մարդիկ հարմար չեն գտել և, գուցե, երկյուղ են կրել իշխանավորների ամարդի արարքները բացահայտող այդ դեպքի պատմությունը գրի անցկացնելուց, քանի դեռ կենդանի էին գործող անձինք՝ Իվանեն, Գորգունը և նրանց կուսակիցները։ Ժամանակ էր պետք այդ ողբերգությունը գրավոր խոսքով պատմության հանձնելու համար։ Եվ այդ ժամանակը հասունացել էր, ըստ երևույթին, XV դարի սկզբներին։

Ամփոփենք արդյունքները. «Տաղ Ստեփանոսին՝ Սիւնեաց եպիսկոպոսին» ողբ-պոեմի հերոս-նահատակը՝ Սյունյաց մեծ իշխան Բուրթելի թոռ, Իվանեի որդի Սուլթանշահ-Ստեփանոս պարոնտերն է։ Նրա խորթ մոր՝ Էլխութլուի սպանությունը և իր նահատակությունը, ամենայն հավանականությամբ, արդյունք է Իվանե Բուրթելյան իշխանի տարբեր կանանցից ծնված որդիների միջև ժառանգական սասցվածքները բաժանելու հողի վրա ծագած վեճերի ու թշնամության։ Ստեփանոսի սպանությունը կատարվել է XIV դարի 60—70-ական թթ. (հավանաբար՝ 1366—1377 թթ. միջոցին), Վայոց ձորի Եղեգնաձոր գավառում, Իվանե Բուրթելյանի Գորգուն որդու նախաձեռնությամբ։ Սուլթանշահ-Ստեփանոսի աճյունը հանգչում է Հերմոնի վանքում։

## СЕМЕЙСТВО БУРТЕЛЯНОВ КНЯЖЕСКОГО РОДА ОРБЕЛЯН И СЮНИЙСКИЙ ЕПИСКОП ПАРОНТЭР СТЕПАНОС

*Академик АНА Л. С. ХАЧИКЯН*

**Резюме**

Вопросы, связанные с идентификацией персонажей средневековой поэмы «На смерть Сюнийского епископа Степаноса», все еще остаются спорными, хотя се специальным исследованием занимались П. Хачатрян и А. Мнацаканян. Некоторые коррективы, предлагаемые в статье, позволяют заключить, что Степанос является внуком великого Сюнийского князя Буртела, сыном Иванэ и известен в источниках по имени Султан.цах-Степанос. Его убийство датируется 60—70 гг. XIV в., похоронен же он в монастыре Эрмона.

---

30 «Պատմա-բանասիրական հանդես», 1965, № 2, էջ 204։